# ՄԱԿԱՐ ԵԿՄԱԼԵԱՆ

## ԴԱՇՆԱԿԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ

**Խմբագրութիւն, ներածութիւն եւ ծանօթագրութիւն՝**

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

**Գահիրէ**

**2000**

# ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կու գանք խորին շնորհակալութիւնները յայտնելու Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան Գահիրէի մասնաճիւղի վարչութեան եւ իր յարգելի ատենապետ տիար Պերճ Թէրզեանին, որոնք յօժարութեամբ ընդունեցին եւ ամէն դիւրութիւն ընձայեցին տպագրելու այս աշխատութիւնը:

Շնորհակալութիւն՝ Երեւանի «Չարենց» Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի տնօրէնութեան եւ երաժշտական բաժինի գիտաշխատողներուն, որոնք տրամադրեցին մեզի Մակար Եկմալեանի ձեռագիրները:

Շնորհակալութիւն՝ բանասէր Տիգրան Գէորգեանին, լեզուական եւ խմբագրական դիտողութիւններուն համար:

Շնորհակալութիւն՝ տիար Մարտիրոս Պալեանին, հրատարակչական վերահսկողութեան համար:

Հ. Ա.

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Հայ երաժշտութեան պատմութեան ազդեցիկ դէմքերէն մէկն է երաժշտահան, խմբավար, մանկավարժ Մակար Եկմալեան (Վաղարշապատ, 1856-Թիֆլիս, 1905): Իր արուեստը կը ներկայացնէ Քրիստափոր Կարա-Մուրզա-Կոմիտաս վարդապետ երաժշտական ուղին միաւորող միջանկեալ գլխաւոր օղակը: Հայկական գեղջուկ, քաղաքային, աշուղական երգերու մշակումները՝ մենակատարներու եւ երգչախումբի համար, գործիքային փոքրաթիւ յօրինումները եւ յատկապէս իր կոթողային ստեղծագործութիւնը՝ *Պատարագը*, կը վկայեն ստեղծագործական ներհուն յուզականութեամբ օժտուած, հայկական երաժշտութեան յօրինումի ու դաշնաւորումի հարցերուն խորապէս գիտակ անհատականութիւն մը:

Եկմալեան դաշնակի համար յօրինած է սակաւաթիւ երկեր՝ որոնք լաւագոյն կերպով կ'արտայայտեն երաժշտահանին ստեղծագործական լեզուին զարգացումը եւ յօրինողական մտայղացումները: Ցարդ, անոնցմէ միայն երկուքը՝ *Գիշերերգ* (*Nocturne*) եւ *Մամթել*, արժանացած են տպագրութեան: Եկմալեանի դաշնակի երկերը՝ բացի քանի մը պատահական կատարումներէ, լայն հասարակութեան մնացած են անծանօթ: Անոնց կարեւորութիւնը՝ իբրեւ հայկական դաշնակի գրականութեան զարգացումի կարեւոր փուլերէն մէկը, անիրաւացիօրէն անտեսուած է մեր երաժշտութեան պատմութեան նուիրուած ուսումնասիրութիւններուն եւ դասագիրքերուն մէջ:

Եկմալեանի դաշնակի ստեղծագործութիւնները կարելի է ստորաբաժնել երկու գլխաւոր խումբի.

ա.-Սկզբնական շրջանի յօրինումներ՝ որոնց համար ուղեցոյց հանդիսացած են եւրոպական վիպապաշտական դպրոցի արտայայտչական եւ արհեստավարժական (technique) նուաճումները:

բ.-Հասուն շրջանի յօրինումներ-մշակումներ՝ ուր երաժշտահանը ձգտած է յայտնաբերել հայկական երաժշտութեան բնորոշ գրելաոճ:

Առաջին խմբաւորումին յարող ստեղծագործութիւններն են.

## ԳԻՇԵՐԵՐԳ

Առաջին անգամ տպագրուած է 1892 թուականին, Թիֆլիսի մէջ: Երկրորդ անգամ կը հրատարակուի 1971-ին, Երեւանի մէջ (տե՛ս *Կոնցերտային պիէսներ դաշնամուրի համար*, կազմող եւ խմբագիր Ա. Ամբակումեան, Երեւան, 1971, էջ 40-45):

Գրուած է Գիշերերգի դասական եռամաս կառուցուածքով՝ քնարական, երգային առաջին մաս (հատածներ 1-36), աշխոյժ ու յագեցած միջին մաս (հատածներ 37-58), քատանսային կապող մաս (հատածներ 58-67), առաջին մասին փոփոխակային կրկնութիւն՝ հարստացած ոլորագիծ ելեւէջումներով (հատածներ 68-106) եւ վերջաբան (հատածներ 106-113):

Մեղեդիի եւ դաշնակումի ինքնաբուխ բնահոսութիւնը, քնարական անմիջականութիւնը, կառուցուածքային յստակութիւնը խօսուն փաստեր են Սբ. Փեթերսպուրկի ուսանողական շրջանին Եկմալեանին ձեռք բերած յօրինողական ամուր զինուածութեան:

Հակառակ գերիշխող եւրոպական մտածելակերպին, ստեղծագործութիւնը իր ժամանակին կը գտնէ սիրալիր ընդունելութիւն: Փորձելով բացատրել այս երեւոյթին պատճառները, երաժշտագէտ Նիկողոս Թահմիզեան կը նշէ՝ թէ Կիլիկեան հայկական պետականութեան անկումէն ետք, հայերը կտրուեցան քրիստոնէական նոր կեդրոններէն եւ ինկան արեւելեան ցեղերու հեղձուցիչ լուծին տակ: Հետեւաբար, «Հայ երաժշտարուեստը 19-րդ դարի սկզբներից ուղղակի խեղդուելով օդի ու լոյսի պակասից, դարակէսերին կենսապահպանման բնազդով նոյնիսկ մեքենաբար հակւում էր դէպի եւրոպական ձեւերը» (Նիկողոս Թահմիզեան, *Մակար Եկմալեան, կեանքն ու ստեղծագործութիւնը*, Երեւան, 1981, էջ 55-56):

## ԵՐԳ ԱՌԱՆՑ ԽՕՍՔԻ

Թէեւ Թուականը յայտնի չէ, բայց ելլելով երաժշտական ոճէն, պէտք է ենթադրել՝ որ *Գիչերերգ*ին ժամանակակից յղացում մըն է:

Դարձեալ եռամաս կառուցուածքով պարզ ու գողտրիկ մանրանուագ մըն է, ուր կը գերիշխէ երգչախմբային-գծային մտածելակերպը, մշտադալար դաշնակումային (harmonique) զարգացումով:

Երկրորդ խմբաւորումի ստեղծագործութիւններէն ոչ մէկուն ստոյգ Թուականը կարելի եղաւ ճշտել: Անոնք կը բնորոշուին երգչախմբային-գծային հիւսուածքով, կուռ հնչածաւալով: Մնալով միաձայն-դաշնակումային (homophone-harmonique) ծիրին մէջ՝ ձայներու գծային յարաբերութիւնները եւ իրենց սահուն ձայնատարութիւնը, երբեմն, ի յայտ կը բերեն բազմաձայն (polyphonique) հետաքրքրական լուծումներ: Այս մշակումներուն մէջ, կշռութա-ելեւէջային ու արտայայտչական ոլորտը սերտօրէն կառչած է բուն մեղեդիին, որ եԹէ մէկ կողմէ կը նպաստէ երաժշտութեան հարազատ վերարտադրումին, միւս կողմէ, սակայն, չի ձգտիր բացայայտել մեղեդիին ներքին, անյայտ ծալքերը, երբեմն առաջ բերելով որոշ բովանդակային միօրինակութիւն: Այնուամենայնիւ, ներդաշնակումի հմուտ լուծումներով, նրբաքանդակ շարահիւսութեամբ, հիւսուածքային պարզութեամբ ու յղկուածութեամբ, հայկական բնատոհմիկ երաժշտութեան ակունքներէն բխած իւրայատուկ յղացքով, այս երկերը կը հասնին ընհուպ մինչեւ Կոմիտաս վարդապետի նախաշեմը: Այս խմբակը կ'ընդգրկէ հետեւեալ ստեղծագործութիւնները.

## ՀԵՐԻՔ ՈՐԴԵԱԿՔ

Յայտնի դերասան ու բեմադրիչ Մարտիրոս Մնակեան՝ Տիգրան Չուհաճեանի *Լէպլէպիճի Հօր-հօր աղա* օփերէԹի հանրածանօԹ «Պիզ Քէօր օղլու» երգին կը յարմարցնէ նոր, հայրենասիրական բառեր եւ երգը՝ «Հերիք որդեակք» նոր անուանումով կը դառնայ հայ ժողովուրդի ազգային-հայրենասիրական ամենասիրուած երգերէն մէկը՝ մոռացուԹեան մատնելով բուն երաժշտահանին անունը: Իբրեւ բանաւոր աւանդուԹեամբ փոխանցուող երաժշտութիւն, անոր տարբերակները բազմիցս կը ձայնագրեն ու կը մշակեն մեր անուանի երաժշտահանները: Անոնցմէ մէկն է Եկմալեանին սոյն երկը՝ ուր դաշնաւորումը հասցէագրուած է ոչ այնքան բացայայտելու հերոսական պոռԹկումներ՝ որքան ընդգծելու ազգին հանդէպ տածուած Թաքուն սիրոյ նուիրական զգացումներ:

## ՁԵՄ ԿՐՆԱՑ ԽԱՂԱՑ

Նուրբ ու ճկուն այս կատակերգը աչքի կը զարնէ քորէական (հատածներ 1-2, եւ այլն) եւ տեղափոխուած եամպական (հատած 4, եւ այլն) շեշտերու վարպետ յաջորդականուԹեամբ: Մեղեդին կ'ընԹանայ *մի* հիմնաձայնով երրորդ ձայնեղանակին մէջ (օր. 1) եւ դաշնաւորուած է հնգեակ ցած գտնուող *լա հարմոնիք* մեծալարին (majeur) մէջ (օր. 2), ճիշտ այնպէս՝ ինչպէս յետագային նոյն երգին այլ տարբերակը պիտի դաշնաւորէր Կոմիտաս վարդապետ (*տե՛ս* Կոմիտաս, *Երկերի ժողովածու*, առաջին հատոր, խմբագրուԹիւն Ռ. Ա. ԱԹայեանի, Երեւան, 1969, էջ 75):

Օր. 1



Օր. 2



## ՊՍՏԻ ՏՂԱՑ

Պաղտասար Դպիրի *Ի ննջմանէդ արքայական* տաղի Թիֆլիսեան տարբերակի մշակումն է: Նիկողոս Թահմիզեանի ջանքերով ան քանիցս հնչած է Երեւանի ձայնասփիւռէն (*տե՛ս* Նիկողոս Թահմիզեան, նշ. աշխ.ը, էջ 106):

Երկրորդ խմբաւորումին դասուող յօրինումներուն ամենաերկարն է: Մեղեդին կը ծաւալուի կրկնակի հարմոնիք *սի* մեծալարին մէջ (օր. 3):




Կազմուած է երեք մասէ՝ որոնց կը շրջափակէ փոքրիկ նախաբան ու վերջաբան մը: Առաջին մասին մէջ (հատածներ 8-25) մեղեդին հիմնուած է հիմնաձայնէն ներքեւ գտնուող հարմոնիք քառալարին վրայ, ուր երկրորդ պարբերութեան սկիզբը (հատածներ 17-21) փորձ մը կը կատարէ չօշափել նաեւ վերի քառալարին ոլորտը: Ներդաշնակուած է մեղեդիի սուտոմինանթային ոլորտի կրկնակի հարմոնիք *մի* փոքրալարին (mineur) մէջ (օր. 4), բացի հատածներ 17-21-էն, ուր՝ մեղեդիի ժամանակաւոր վերելքին զուգահեռ, ձայնակայքը (tonalité) կը նոյնանայ մեղեդիական ձայնակայքին՝ կրկնակի հարմոնիք *սի* մեծալարին, հետ:




Երկրորդ մասը (հատածներ 26-47) բաղկացած է փոփոխակային տարբերակով կրկնուող երկու պարբերութենէ: Մեղեդին կ'ընդարձակէ իր ձայնատարածութիւնը եւ փոխադրուելով դէպի համեմատաբար ցած հնչամաս՝ կը պարփակէ երկու քառալարերը: Դաշնաւորումը միանման է մեղեդիական ձայնակայքին: Հեղինակէն չի վրիպիր դաշնակումի մանրամասնութիւններ: Այսպէս, հատածներ 33-34 եւ 43-44 միեւնոյն մեղեդիի տարբերակներն են, միեւնոյն դաշնակումային հենքով: Սակայն Եկմալեան հատած 33-ի վերջին քառորդին, բամբին (basse) կը յանձնէ եօթներորդ ձգտող հնչիւնը՝ որ զիլին (soprano) հետ կը կազմէ փոքրացած երրեակ ձայնամիջոցը եւ միասին կը լուծուին դատարկ ութեակի մէջ: Մինչ անոնց համապատասխանը հատածներ 43-44-ին մէջ կ'ընդգըրկէ սովորական S-D յարաբերութիւն:

Երրորդ մասին (հատածներ 47-66) մէջ, մեղեդին կը թաւալուի բարձր, պայծառ հնչամասին մէջ, աստիճանաբար շիջանելով եւ նահանջելով ներքեւի հնչամասին մէջ: Դաշնակումը կը տարուբերուի *սի*-ին եւ *մի*-ին միջեւ, որոնց պայքարը կը յաղթորոշուի վերջաբանին մէջ (հատածներ 67-72)՝ ի նպաստ վերջինին:

## ԲԱՂԵՐ, ԴՈՒՔ ԿԱՆԱՉԵՑԷՔ

Տխրաթախիծ մեղմութեամբ տոգորուած մանրանուագ մըն է: Տարբեր հատածներու երրորդ ութերորդական ձայնանիշերուն յատկացուած շեշտերը՝ 6/8 ամանակով (mètre) երկրորդային կշռութային կերպար մը կը հիւսէ: Մեղեդին կ'ընթանայ *ֆա տիէզ* հիմնաձայնով երրորդ կողմ ձայնեղանակին մէջ (օր. 5) եւ ներդաշնակուած է հիմք ունենալով նոյն հիմնաձայնը: Յատկանշական է դաշնեակներուն (accord) մէջ երրեակային հնչիւնի յաճախակի բացթողումները:




## ԲԵՐԴԻՑԸ ԴՈՒՐՍ ԵԼԱՑ ԱԼԱԳԵԱԶ ՏԵՍԱՑ

Դիւրասահ, հեշտօրօր քմայքով կը բնորոշուի այս երգը: Մեղեդիին համաձայնոյթը (mode) *լա* հիմնաձայնով երկրորդ ձայնեղանակն է (օր. 6), ուր նաեւ հիմնուած է դաշնաւորումը: Երբ մեղեդին կը տեղափոխուի դէպի երկրորդ քառալարը՝ շրջապատելով դիմող

ձայնը (*մի*), ձայնակայքը կը դառնայ մեծալար: Այսպէս, փոքրալար-մեծալար անընդմէջ զարտուղութիւնները (modulation) վառ երանգ ու մշտահոս թափ կը պարգեւեն ստեղծագործութեան:


Op. 6

## ՀՈՎ ԱՐԷՔ, ՍԱՐԵՐ ՋԱՆ

Եթերային վճիտութիւն, զուլալ, երկնագեղ թափանցիկութիւն մը կը բուրէ այս ստեղծագործութեան ընդերքէն: Մեղեդին *սի* հիմնաձայնով երրորդ կողմ ձայնեղանակին մէջն է, ուր երկրորդ քառալարի էկորձն ու վերնախաղը (*ֆա* եւ *սոլ*) հանդէս կու գան ածանցուած (altéré) վիճակով (օր. 7):


Op. 7

## ՃԱԽԱՐԱԿ

*Ռէ* հիմնաձայնով երրորդ ձայնեղանակի մէջ ընթացող կուռ ու ոլորուն մեղեդի մը (օր. 8), դաշնաւորուած նոյն հիմնաձայնական ոլորտին մէջ:


Op. 8

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ

Կը յատկանշուի հարուստ հնչեղութեամբ, լիարժէք դաշնեակներով եւ համեմատաբար լայն հնչամասով: Առաջին նախադասութեան մեղեդին (հատածներ 1-6) գրուած է *ֆա տիէզ* հիմնաձայնով երրորդ ձայնին մէջ (օր. 9), ուր գերակշռող դեր ունի դիմող ձայնը՝ *սին*, որով իր շուրջ կը մագնիսացնէ դաշնակումային հենքը՝ *հարմոնիք սի* փոքրալար (օր. 10):

Op. 9


Op. 10


Երկրորդ նախադասութեան մեղեդին (հատածներ 6-14) համաձուլուածք մըն է առաջին (հատածներ 6-8, 11-14) եւ երրորդ (հատածներ 9-10) ձայնեղանակներուն, որոնք միաւորուած են մէկ ընդհանուր ձայնակայքի՝ *ֆա տիէզ* մեծալարի մէջ: Հատածներ 6 եւ 10-ի սոփրանոյին բնական ձգտող հնչիւնները (*մի*)՝ հատած 8-ի ալթոյի բարձր ձգտող հնչիւնին (*մի տիէզ*) հետ կ'առաջացնեն տպաւորիչ համաձայնութային գունախաղ:

## ԱՐԱԶԸ ՀԵԾՏԱՑԵԼ Ա

Յուզաթաթաւ ու վշտամորմոք արտայայտչականութիւնը կը գերիշխէ այստեղ: Մեղեդիին հենքը *սոլ* հիմնաձայնով առաջին ձայն դարձուածքն է (օր. 11), ուր եւ իրականացուած է ներդաշնակութիւնը: Համաձայնութային բնական զգացողութեամբ, Եկմալեան ձայնեղանակին հարազատ լրացում մը կատարած է թենորներուն վերնախաղը ձայնագրելով կիսվար (*մի պեմոլ*) (հատածներ 13 եւ 25):

Op. 11


# ԾԱՄԹԵԼ

Աշխոյժ, կենսուրախ կշռոյթով պարերգ մըն է: Մեղեդին *ռէ* Հիմնաձայնով երկրորդ ձայնեղանակին մէջ է (օր. 12):

Օր. 12



Ներդաշնակումին Համար օգտագործուած են պարզագոյն՝ բայց առաւելապէս արտայայտիչ միջոցներ: Բաւարար է ութեակային կրկնապատկում մը (Հատածներ 1–2 եւ այլն) կամ երկրորդային գծային յպում մը (Հատածներ 9–14, ձախ ձեռք) առաջ բերելու ոճական յստակութիւն: Հիմնաձայնական փոքրալար դաշնեակներուն մէջ Հարազատօրէն բաց թողուած են երրեակային Հնչիւնը: Եթէ Հատածներ 1–2, 7–8, 15–16-ի մորտաններուն *սի*-երը վերցուած են *պեմոլ*՝ որ Համահնչիւն է Համաձայնոյթի բնուղիղ (diatonique) Հնչիւնաշարին, Հատածներ 11–13-ին *լա պեմոլ*ները բաղադրեալ (chromatique) շեղումներ են՝ որոնք կ'արտացոլեն ժողովրդական երգիչներու, նուագածուներու ու սազանդարներու նուագը: Յետագային, Կոմիտաս վարդապետ պիտի Հրաժարէր նման բաղադրումներէ:

Այսպէս, Մակար Եկմալեանի դաշնակի ստեղծագործութիւնները՝ սկսելով եւրոպական վիպապաշտական արհեստավարժութեան աւանդոյթներով, ապրեցան էական ու բարձրաթռիչ զարգացում՝ բացայայտելով Հայկական երաժշտութեան յատկորոշ կառուցուածքային ու դաշնակումային բազում ոլորտներ: Անոնք արժէքաւոր ներդրումներ են ԺԹ. դարու Հայկական դաշնակի գրականութեան մէջ, զորս Հարկ է կատարել ու լայնօրէն տարածել:

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Եկմալեան թողած է երեք աւարտուն ուրուագիծեր (esquisses) նուագախումբի մշակումի Համար: Գրած է անոնց դաշնակի մաքրագիր տարբերակը, զանոնք յետագային գործիքաւորելու Համար: Սակայն գործիքաւորումները կամ չեն իրականացուցած, կամ կորսուած են: Առաջին Հայեացքէն զարմանալի կը թուի՝ թէ Եկմալեանի նման Հմուտ երաժշտաՀան մը նուագախումբի ստեղծագործութեան մը Համար նախ գրէր անոր դաշնակի «փոխադրութիւն»-ը: Ընդունուած է Հակառակը: Սանկայն, ըստ երեւոյթին, ասիկա Սբ. Փեթերսպուրկեան դպրոցի՝ ուր երկար տարիներ ուսանած է Եկմալեան, բնայատկութիւններէն է: Գիտենք, որ նոյն դպրոցի շրջանաւարտ Ալեքսանդր Սպենդիարեան՝ *Ալմաստ* օփերան յօրինելու ժամանակ, նախ աւարտած է դաշնակի զեղջումը եւ յետոյ դիմած գործիքաւորումին (*տե՛ս* Ա. Սպենդիարով, «Ալմաստ», օպերա չորս գործողութեամբ, *Երկերի լիակատար ժողովածու*, տասներորդ Հատոր, խմբագրութիւն Գ. Բուդաղեանի, Երեւան, 1971, էջ 11):

Երեք ստեղծագործութիւններն ալ իրենց ընդարձակ կառուցուածքով, ազատ զարգացումով, ներքին բազմազանութեամբ, գունային Հարստութեամբ, Հիւսուածքի ու ձայնատարածութեան խտութեամբ, իրօք, նուագախումբի Հնչեղութիւն ունին: ԵրաժշտաՀանը չէ նշած անոնց գործիքային կազմը: Մեր կարծիքով, զանոնք կարելի է Հաւասարապէս մշակել մեծ Համանուագային (symphonique) նուագախումբի, սենեկային նուագախումբի կամ ժողովրդական նուագարաններու Համոյթի Համար:

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

# ԵՐԳ ԱՌԱՆՑ ԽՕՍՔԻ
# SONG WITHOUT WORDS














# ՀԵՐՈՒՔ ՈՐԴԵԱԿՔ











# ՁԵՄ ԿՐՆԱՑ ԽԱՂԱՑ
















# ՊՍՏԻ ՏՂԱՑ









# ԲԵՐԴԻՑԸ ԴՈՒՐՍ ԵԼԱՑ ԱԼԱԳԵԱԶ ՏԵՍԱՑ














# ՀՈՎ ԱՐԷՔ, ՍԱՐԵՐ ՋԱՆ









# ՃԱԽԱՐԱԿ






# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ









# ԱՐԱԶԸ ՀԵՇՏԱՑԵԼ Ա











# ԵՐԵՔ ՈՒՐՈՒԱԳԻԾ ՆՈՒԱԳԱԽՄԲԻ ՀԱՄԱՐ
## No. 1










# No. 2














## ԳԻՇԵՐԵՐԳ

Վերատպեցինք ըստ խորհրդահայ դաշնակահարուհի ու մանկավարժուհի փրոֆ. Աննա Ամբակումեանի խմբագրած օրինակին, որ լոյս տեսած է *Կոնցերտային պիէսներ դաշնամուրի համար* ժողովածուին մէջ, Երեւան, 1971, էջ 40-45:

## ԵՐԳ ԱՌԱՆՑ ԽՕՍՔԻ

Ձեռագիրը կը գտնուի Երեւանի «Չարենց» Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Եկմալեանի դիւանին մէջ, թիւ՝ 6, ինքնագիր, թանաքագիր, կազմուած մէկ թերթէ: Խորագիրը եւ հեղինակին անունը գրուած են ռուսերէն:

որուն վրայ մատիտով կատարուած է սրբագրութիւնը:

**Հատուած 12.**

Ձախ ձեռքը նախապէս եղած է այսպէս,



**Հատուած 14.**

Աջ ձեռքը գրուած է այսպէս.




Սոփրանոյին աստղանիշով նշանակուած ձայնաշիչը ըլլալու է *սօ տիէզ*՝ փոխան *սօ տուպլ տիէզի*:

Մնացած բոլոր ստեղծագործութիւններուն համար հիմք ծառայած է նոյն դիւանին մէջ գտնուող թիւ 29 ձեռագիրը, ինքնագիր, կազմուած 10 թերթէ: Դիւանի այլ թղթածրարներու մէջ կը գտնուին նաեւ նոյն եւ այլ դաշնակի երկերու անաւարտ սեւագրութիւններ:

Թիւ 29-ը կը բովանդակէ հետեւեալ ստեղծագործութիւնները՝ զորս կը թուենք ըստ հեղինակի ձայնագրած հերթականութեան ու նշած խորագիրներուն.

1.-*Հերիք որդեակք* (էջ 1). 2.-*Ջեմ կրնար խաղալ* (էջ 1ա). 3.-*Պստի տղայ* (կամ *Ի ննջմանէդ*) (էջ 2-2ա). 4.-Ժողովրդական *Բաղեր դուք* (էջ 3-3ա). 5.- *Ժողովրդական* (էջ 3ա-4). 6.-Ժողովրդական *Հով արէք* (էջ 4-4ա). 7.-Ժողովրդական *Մանիր մանիր* (էջ 4ա). 8.-*Ժողովրդական* (էջ 4ա). 9.-*Էսքիզ օրկեստրի* (ժողովրդական երգ) (էջ 5-5ա). 10.-*Անծանօթ հայ ժողովրդական երգ* (էջ 6). 11.-*Վիմ վգի* (էջ 6ա). 14.-*Էսքիզ օրկեստրի համար* (էջ 7-8ա). 15.-*Էսքիզ օրկեստրի համար* (էջ 9-9ա). 16.-Օրկեստր եւ խումբ (էջ 9ա). 17.-[Անվերնագիր, գրուած երկու տողի (չորս հնգագիծ) վրայ] (էջ 10-10ա):

Ինչպէս կը նկատենք, կը պակսին թիւ 12 եւ 13-ը: Կամ հեղինակը ջնջած է զանոնք, կամ ալ թերթը կորսուած է:

Եկմալեան չէ նշած նուագարանը: Սակայն անոնց հիւսուածքը, միակցուած երկու հնգագիծի առկայութիւնը կը յուշեն՝ որ անոնք նախատեսուած են դաշնակի համար:

Այս երկերուն մէկ մասը՝ իբրեւ մեներգ եւ խմբերգ, շատոնց հրատարակուած ու շրջանառութեան մէջ է շնորհիւ երաժշտագէտ Ռոպերթ Աթայեանի խմբագրած արժէքաւոր ժողովածուին (*տե՛ս* Մակար Եկմալեան, *Խմբերգեր եւ մեներգեր*, Երեւան, 1970): Վերջինին մէջ, սակայն, անոնցմէ քանի մը հատը հանդէս եկած են տարբեր խորագիրներով: Նկատի ունենալով տպագրուած տարբերակներուն արժանացած կատարողական ընդունելութիւնը եւ խուսափելու համար երկուութենէ, նախընտրեցինք այս տպագրութեան մէջ թիւ 29 ձեռագիրին խորագիրները նոյնացնել Աթայեանի խմբագրածին հետ: Հետեւաբար, *Ջեմ կրնար խաղալը* վերածած ենք *Ջեմ կրնայ խաղայի*, *Ժողովրդականը* (թիւ 5)՝ *Բերդիցը դուրս ելայ ալագեազ տեսայի*, *Մանիր մանիրը*՝ *Ճախարակի*, *Անծանօթ հայ ժողովրդական երգը*՝ *Արագը հեշտացել ա*, *Վիմ վգին*՝ *Ծամթելի*: *Էսքիզ օրկեստրի համար* երեք ստեղծագործութիւնները (թիւ 9, 14, 15) առանձնացնելով զետեղեցինք «Յաւելուած» գլուխին մէջ,

չչփոթելու համար բուն դաշնակի ստեղծա-գործութիւններուն հետ: Իսկ թիւ 16 եւ 17-ը՝ ակնյայտօրէն ընդգրկելով երգչախումբ, մեր

## ՀՈՎ ԱՐԷՔ, ՍԱՐԵՐ ՋԱՆ

**Համար 17.**

Սրբագրութիւններով պատճառով յստակ չէ՝ թէ ձախ ձեռքի վերեւի ձայնին (թենոր) առաջին քառորդը *լա* է թէ ձայնահատ (silence):

**Համար 18.**

Սրբագրութիւններուն պատճառով յստակ չէ՝ թէ նոյն ձայնին վերջին քառորդը *լա* է թէ *մի*:

**Համարներ 17-20.**

Համար 20-ը կ'աւարտի կրկնողութեան նշանով, որուն սկիզբը չէ նշանակուած: Կամ ձեռագրական վրիպակով մը կրկնութեան սկիզբը (համար 17) մոռցուած է, կամ կրկնութիւնը սխալմամբ նշուած է եւ պէտք է ջնջուի, նկատի առնելով՝ որ նոյն նախադասութիւնը համարներ 25-28-ին մէջ կը հնչէ

## ԱՐԱՋԸ ՀԵՇՏԱՑԵԼ Ա

Ձեռագիրը կը վերջանայ համար 20-ին, առանց վերջագիծի (‖), իսկ համար 16-ը կը կրէ կրկնագիծ (‖): Միաժամանակ, համար 9-ի սկիզբը եւ համար 20-ի վերջաւորութեան նշանակուած է մէկական խաչանիշ, որոնք ցոյց կու տան՝ թէ նախադասութիւններու տեղաշարժ տեղի պէտք է ունենայ: Կարելի է դիտարկումի ոլորտէն հեռու է:

Ստորեւ՝ ծանօթագրութեան կարօտ քանի մը հարց.

միայն մէկ անգամ:

**Համար 29.**

Սրբագրութեան պատճառով, յստակ չէ՝ թէ ձախ ձեռքը հետեւեալ երկու տարբերակներէն որ մէկն է.





առաջարկել երկու լուծում.

ա.-Համար 20-էն ետք կրկնել համարներ 9-16-ը, որոնցմով աւարտել ստեղծագործութիւնը:

բ.-Համարներ 17-20-ը տեղափոխել համար 9-էն առաջ:

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Գահիրէի Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան «Սաթենիկ Ճ. Չագըր հիմնադրամ»-ը՝ Հայկ Աւագեանի խմբագրութեամբ եւ ծանօթագրութեամբ լոյս ընծայած է հետեւեալ երաժշտական հատորները.

1.-**Տիգրան Չուհաճեան,** *Սուրբ, սուրբ,* քառերգի եւ սեննեկային նուագախումբի համար եւ *Հայր մեր,* սոփրանոյի, ալթոյի, իգական երգչախումբի եւ սեննեկային նուագախումբի համար, Գահիրէ, 1999 (74 էջ)

2.-**Տիգրան Չուհաճեան,** *Արշակ Բ.,* օփերա չորս արարով, իտալերէն լիպրեթթոյով, Գահիրէ, 2000

ա.-Դաշնակի եւ երգի համար (vocal score) (440 էջ)
բ.-Նուագագրութիւն (orchestral score) (804 էջ)
գ.-Առանձին նուագարաններ՝ կազմուած 24 հատորէ (1549 էջ)

3.-**Տիգրան Չուհաճեան,** *Աւէ Մարիա,* տարբերակներ, Գահիրէ, 2000 (82 էջ)

4.-**Տիգրան Չուհաճեան,** *Կաւոթ,* ջութակի, թաւ ջութակի, դաշնակի եւ հարմոնիումի համար եւ *Զորս փիւկ,* լարային եռանուագի եւ քառանուագի համար, Գահիրէ, 2000 (52 էջ)

5.-**Քրիստափոր Կարա-Մուրզա,** *Դաշնակի ստեղծագործութիւններ,* Գահիրէ, 2000 (34 էջ)

6.-**Ալեքսանդր Սպենդիարեան,** *Գուշակուհին,* քառաձեռն դաշնակի համար, Գահիրէ, 2000 (22 էջ)

7.-**Արքատի Քուկէլ,** *Էջեր ալպոմէն* եւ *Հայկական պար,* դաշնակի համար, Գահիրէ, 2000 (18 էջ)

# ماكاريكماليان

## مؤلفات البيانو

التحرير الموسيقى والتعليقات
هايج أفاكيان

القاهــرة
٢٠٠٠